թեան ուժերը վերջին վեց տարիներուն ընթացքին քառապատկուած են, յայտարարեց զօր. Նորսթէտ՝ Ուաշինկթընի մէջ:

ԻՐԱՆԻ շահը եւ թագուհին, որոնք Փարիզ կը գտնուէին, ճաշի հրաւիրուեցան նախագահ Քոթիի կողմէ:

ԱՐԺԱՆԹԻՆԻ մէջ նախկին նախագահ Փերոնի կողմնակիցներէն 44 հոգի, որոնք խլրտումներ կ՚ուզէին ստեղծել, ձերբակալուեցան:

ՄԱՐՈՔԻ Սուլթանը որոշեց մասնաւոր ատեան մը ստեղծել, որ պիտի դատէ Կլաուի Փաշայի զաւակները:

ԱՐԵՒԵԼԵԱՆ Գերմանիոյ իշխանութիւնները յայտնեցին թէ «Փրանսական լրտես» մը ձերբակալած են:

ՄՈՍԿՈՒԱՅԻ ձայնասփիւռը հերքեց եւ «զրպարտութիւն» յորջորջեց այն լուրը, թէ Լիբանանի երեսփոխանական ընտրութեանց մէջ ազդեցութիւն բանեցնելու համար Խ. Միութիւնը դրամ բաժնած է ընդդիմադիր տարրերուն:

ԵԳԻՊՏԱԿԱՆ կառավարութիւնը յայտարարեց թէ Յորդանանի նիւթական օժանդակութիւն պիտի ընեն միայն այն պարագային, երբ փաստուի թէ «դրական չէզոք»ի դիրքի մէջ է:

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ուսուցիչներու գործադուլին պատճառով կառավարութիւնը որոշեց փակուած նկատել դպրոցական տարեշրջանը:

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ Երեսփ. Ժողովը միաձայնութեամբ վաւերացուց 1957ի պետական պիւտճէն, որ կը հասնի երկու միլիառ 250 միլիոն տոլարի:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐԸ 23 միլիոն տոլարի յատկացում մը ըրին Իրանի՝ ազգային պաշտպանութեան պէտքերուն յատկացուելու համար:

ԵԳԻՊՏԱԿԱՆ «Էլ Ահրամ» թերթին համաձայն Նասր եւ մառէշալ Թիթօ հանդիպում մը պիտի ունենան այս տարուան վերջը՝ Գահիրէի կամ Փորթ Սայիտի մէջ:

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Ֆ. Կ. Խաչի Պոմոնի մասնաճիւղին վարչութիւնը կը խնդրէ որ նկատի առնուի իր դպրոցին ամավերջի հանդէսը, որ տեղի պիտի ունենայ՝ Յուլիս վեցին, շաբաթ գիշեր, Պոմոնի Ս. Սահակ-Մեսրոպ սրահին մէջ, ժամը ճիշդ 9ին:

Մանրամասնութիւնները յաջորդով:

ՖՐԱՆՔՕ-ԱՐՄԷՆԻԷՆ
ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

ԴԵՐԱՍԱՆ ԱՒԵՏԻՍ ՄԻՍԻՐԵԱՆ

ժողովուրդին փափաքին վրայ
դարձեալ կը բեմադրէ
Մաքս Տրէհերի

«ՏԱՍՆԸՅՈՒԹԸ ՏԱՐԵԿԱՆՆԵՐԸ»
(Դրամ երեք արար)

Կիրակի, Յունիս 16ի իրիկունը,
ժամը 8.45ին

Փոլ Ֆարալիքի թատրոնին մէջ,
21 ռիւ Իվ Թիւտիք
Մէթրօ Ռեպիւպլիք)

Ինչպէս նաեւ ֆրանսերէն «ՋԱՓԻ
ՎՐԱՅ ՇԻՆՈՒԱԾ ԱՄՈՒՍԻՆԸ»
Բեմադրութիւն՝ Հանրի Ճանիքի
Կը մասնակցին (այբուբենական կարգով) Մատլէն Էֆիզեան, Մառի Էօֆսիւզեան, Հայկուհի Խտըշեան, Ժիզէլ Ճանիք, Աւետիս Միսիրեան, Տրդատ Նշանեան:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Մարսէյլ, Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ թաղականութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները փոխան ծաղկեպսակի Տիգրան Վարդանեանի մահուան առթիւ: Պ. Պ. Վանոյեան 500 ֆրանք, եկեղեցիին, Պուլվ. Օտտոյի Կ. Խաչի մասնաճիւղը հազար ֆր. Մշակոյթի տան: Պ. Յ. Օհանեան հազար ֆր. տեղւոյս դպրոցին եւ 500 ֆր. եկեղեցիին: Տէր եւ Տիկին Շահրիկեան հազար ֆր. Մշակոյթի տան: Պ. Ս. Օհանեան 500 ֆր. Կ. Խաչին, 500 ֆր. Նոր Սերունդին եւ 500 ֆր. եկեղեցւոյ: Տէր եւ Տիկին Ուլուսեան հազար ֆր. Մշակոյթի տան եւ 500 ֆր. «Յառաջ»ի տարածման:

Նոյն առթիւ թաղականութիւնը եւ Պուլվար Օտտոյի Կ. Խաչը իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն Այրի Տիկին Մարգրիտ Վարդանեանին եւ բոլոր պարագաներուն:

Imprimerie Araxes, 46, Rue Richer.
Paris (9e) Pro. 05-73.

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կը խօսի ՄԻՆԱՍ ԹԷՕԼԷՕԼԵԱՆ

Այս Հինգշաբթի իրիկուն՝ ժամը 9ին Սէն Լուի մէջ: Նիւթը՝ Ինչու կը պայքարին Դաշնակցութեան դէմ, հայրենիքի եւ արտասահմանի մէջ:

Այս Ուրբաթ իրիկուն՝ ժամը 9ին, Սէն Ժերոմի մէջ՝ «Ազգային եկեղեցական իրադարձութեանց շուրջ»:

16 Յունիս Կիրակի, կէսօրէ վերջ, ժամը 3ին, Կարտանի «Գեղունի» սրահին մէջ, «Հայաստանի անկախութեան 39րդ տարեդարձին առթիւ»:

17 Յունիսին, երկուշաբթի երեկոյեան, ժամը 9ին, Պոմոնի Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ, նիւթը՝ «Հայութեան ազգ. եւ քաղաքական կեանքը, Հայաստանի եւ արտասահմանի մէջ»:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ
ԳՐԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ
Մարսէյլի մէջ

Այս Չորեքշաբթի ժամը ճիշդ 21ին, Ֆրնս. Համալսարանի Ամփիթատրոնը, 40 Ալէ Լէօն Կամպէթա:

Կը խօսի Պ. ՄԻՆԱՍ ԹԷՕԼԷՕԼԵԱՆ

Նիւթ՝ Ի՞նչ ցանեցին եւ ի՞նչ կը հնձեն խորհրդային գրականութեան մէջ:

Մուտքը ազատ է:

## ԱՄՐԱՆ ՀԱՄԱՐ

Քանի մէջ վարձու է սենեակ մը եւ խոհանոց մը Յունիս եւ Յուլիս ամիսներուն համար, իսկ Օգոստոսի համար երկու սենեակով եւ խոհանոց յարկաբաժին մը: Մանրամասնութեան համար դիմել թերթիս վարչութեան:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն Պլքցի Սահակենց Մաղաքի կինը՝ Մարիամ, կը փնտռէ Օղոյի աղջիկը Մարիամ եւ անոր աղջիկը Ագապին: Տեղեկացնել Պ. Աւագեանի՝

(Caté) 79 Ave. J. Jaurès, Décines
(Isère)

×

Սարուխանեան Գուրգէն (ծնած 1921ին Էջմիածնի շրջանի Խաթունարխ գիւղը): Հօրը անունը Սարգիս, մօրը՝ Հայկանոյշ, որոնք այժմ կ՚ապրին Հայաստան Հոկտեմբերեան շրջանի Ջաֆարապատ գիւղը: Տեղեկացնել Զաքար Մանուկեանի,

34 Villa Rouveyrolle, Asnieres (Seine)

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՀԱՅ ԴԱՏԸ

Հայեւռուս յարաբերութիւններու լոյսին տակ:

Գրեց՝ ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆ

Տպարան «Յուսաբեր», Գահիրէ 1957:
Գին՝ 1100 ֆրանք:
Դիմել Յառաջի եւ հայ գրատուններ:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր, Քառէի վերնայարկը: Դասախօս՝ ԱՐՏԱՇԷՍ ԳՄԲԷԹԵԱՆ, նիւթ՝ «Երեք Յովհաննէսները (Աբէլեան, Մելումեան, Զարիֆեան):

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

Օր. ԱՌԼԷԹ ԳՐԻԳՈՐԵԱՆ
LOUIS MÉNAGER
Ամուսնացած
3 Յունիս, 1957 Փարիզ

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Ֆ. Կապ. Խաչի վարչութիւնը՝ ընդհ. ժողովի կը հրաւիրէ Միութեան բոլոր անդամուհիները՝ այս չորեքշաբթի, կէսօրէ վերջ ժամը 3ին, ընկերուհի Մարի Կէնճեանի բնակարանը, 172 րիւ Պուալօ, Լիոն: Անդամուհիներէն կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Խիստ կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Կապ. Խաչի միջմասնաճիւղային ժողովը այս չորեքշաբթի կէսօրէ վերջ ժամը 15ին, Քաֆէ Րէժանի վերնայարկը: Խիստ կարեւոր օրակարգ:

# ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ
(36 Avenue Charles de Gaulle)
Կազմակերպուած
ՓԱՐԻԶԻ ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ
ԻՐ «ՀԱՆՐՕԳՈՒՏ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ» ՃԱՆԱՉՄԱՆ Ա. ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՒ
Նախագահութեամբ ՀԱՅՐԱՊԵՏԱԿԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿ ԳԵՐ. Տ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆի

Կիրակի, 16 Յունիս, ժամը 14էն 22 վրայ, ամէն տեսակ ուտելիք եւ Բացօթեայ ճաշ պատրաստ, սեղաններու ըմպելիներ մատչելի գիներով:

Գեղարուեստական բաժին, պար եւ զանազան խաղեր:

ՄՈՒՏՔ 100 ՖՐԱՆՔ

Փութացէք ուրեմն ներկայ ըլլալ Յունիս 16ին: ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ԴԱՐԱՍՏԱՆԸ

Շոգեկառք՝ Կար տիւ Նորէն ժամը 14 եւ 14.30ին, Անկէն, անցնիլ Անկէնի կայարանի կամրջակը եւ առնել օթօպիւսը մինչեւ հրօլէ:





## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀԱՅԻԹԻԻ մէջ պետական նոր հարուած մը կազմակերպուեցաւ. վեց ամսուան մէջ եօթներորդ պետական հարուածն է ասիկա :

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐԸ յառաջիկային պիտի պատասխանեն Ուաշինկթընի արաբական դեսպաններու Ալժերիոյ մասին կատարած դիմումին :

ՅՈՒԼԻՍԷՆ սկսած հրանիւթերու վաճառքը ազատ յայտարարելու ծրագիրը կ'ուսումնասիրուի Ֆրանսայի մէջ: Կը կարծուի սակայն թէ հրանիւթերու գինը յաւելում պիտի կրեն :

ԱՍԻՈՅ մէջ ծայր տուող «կռիփ»ի համաճարակէն ցարդ վարակուած են աւելի քան երկու միլիոն հոգի : Առողջապահութեան միջազգային գրասենեակը կը հաղորդէ որ հիւանդութիւնը մահացու չէ եւ կարելի է չիճուկներու ներարկումով առաջքն առնել: Ֆրանսայի, Իտալիոյ եւ Անգլիոյ մէջ մասնաւոր չիճուկ մը կը պատրաստեն :

ՀԱՎՐԻ մէջ նաւային բանուորներու գործադուլին պատճառով «Իլ տը Ֆրանս» եւ ուրիշ նաւեր չկրցան ճամբայ ելլել :

ԿԱՐՏԻՆԱԼ Վիժինսքի, վերջին անգամ մըն ալ ընդունուելէ վերջ Պապին կողմէ, երկուշաբթի օր Լեհաստան մեկնեցաւ, որպէս Լեհաստանի կրօնական առաջնորդ :

ՄՈԼՈԹՈՎ եւ Միկոյեան յայտարարեցին թէ համամիտ են Մ. Նահանգներու հետ փոխանակել հեռատեսիլէն սփռուած տեսակցութիւններ :

ԿԻՐԱԿԻ օր Իվրիի մէջ պիտի բացուի Ֆրանսայի Աշխատաւորական Դաշնակցութեան (ՍԷԺԷԹԷ) 31րդ համագումարը :

ՓԱՐԻԶԻ հինգ մեծ վաճառատուներուն պաշտօնեաները վերջերս գործադուլներ կազմակերպած էին՝ աշխատավարձերու յաւելում պահանջելով: 18.000 պաշտօնեաներ գոհացում ստացան :

ԹՈՒՆՈՒԶԻ մէջ նոր միջադէպեր պատահեցան ֆրանսացի զինուորականներու եւ Թունուզցի ոստիկաններու միջեւ :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական [illegible]ախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր ժամը 21ին, Քափէ Քաթէի վերնայարկը: Կը խօսի Պ. ՄԿՐՏԻՉ ՊԱՐՍԱՄԵԱՆ: Նիւթը՝ Գաւառի գրականութիւնը եւ Թլկատինցին : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցասէր Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան :

Տիկին Բագարատ Մակարեան ի յիշատակ իր ամուսնոյն 5000 Ֆր. :

Տիկին Սուլթան Սէֆէրեան նպատակի մը համար հազար ֆրանք :

Վարուժան, Համազասպ եւ Վահագն Վարդանեաններ իրենց մեծ մօր հանգուցեալ Իսկուհի Վարդանեանի յիշատակին հինգ հազար ֆրանք :

Տէր եւ Տիկին Ղազար Ահարոնեան իրենց մօր հանգուցեալ Իսկուհի Վարդանեանի մահուան քառասունքին առթիւ 5000 ֆրանք :

Աղքատախնամ Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները. — Հալըճեան ընտանիք հազար Ֆր., Տիկին Բ. Մակարեան երկու հազար, Վարդանեան ընտանիք հազար ֆրանք :



Imprimerie Araxes, 46, Rue Richer,
Paris (9e) Pro. 05-73.

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ—ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ
խմբ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Մարտ - Ապրիլ (Թիւ 183 – 184), ճոխ բովանդակութեամբ (48 էջ). — Մարդոց անունները, անոնց նշանակութիւնը եւ ներգործութիւնը նկարագիրներու վրայ (Շ. Նարդունի). —Բայօթեայ քուն (Տքթ. Ալավերդեան). — Ստամոքսին մէջ խոց ունի (Տոքթ. Օնաո). — Կենցաղավարութիւն (Տիկ. Պօժէօ). — Հաւկիթը պատմութեան եւ բժշկութեան մէջ (Նարդեան Բժշկարան). — Երեխաներու փորհարութիւն (Տոքթ. Գալուստեան). — Թանթրուենի (Յ. Իշխանեան). — Նոր հիւանդութիւն մը՝ «սրունքներու անհամբերութիւն» (Տոքթ. Շ. Այվազեան). — Ի՞նչպէս յաղեցնել ծարաւը (Տոքթ. Մելիք - Ադամեան). — Ֆրանկախտը (Տոքթ. Միսաքեան). — Ծերութեան մասին (Տոքթ. Նաւասարդ). — Հայաստանի աղբիւրները (Ղուկասեան). — Առաջին օգնութիւն արկածեալներու (Խաչուհի). — Քանի՞ զաւակ բերել (Տոքթ. Աչճեան). — Ներահայեաց եւ արտահայեաց խառնուածքները (Տոքթ. Սերոբեան) :

Տարեկան բաժնեգինը 1000 ֆրանք Ֆրանսա, 1200 ֆրանք արտասահման: Դիմել Շ. Նարդունիի, Ցառաջի հասցէով :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Ալֆորվիլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է ընկերուհի Այրի տիկին Մ. Մինասեանէ հազար Ֆր. Օգափոխութեան կայանի կարօտ մանուկներուն ի նպաստ :





## ՀԱՅ ՄԱՅՐԵՐՈՒ ՓԱՌԱՏՕՆԸ

Կազմակերպուած՝ Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ԿՈՂՄԷ :

Կիրակի, 23 Յունիս, կէսօրէ վերջ ժամը 14.30ին, ՓՕԼ ՖԱՐԱԼԻՔ ԹԱՏԵՐԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ, 21, րիւ իվ – Թուտիէ, մէթրօ Ռեփիւպլիք :

Հովանաւորութեամբ պետական անձնաւորութեանց եւ նախագահութեամբ Կաթողիկոսական Պատուիրակ Տ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ:

Այս տարուան Փառատօնին հրաւիրուած է արտասահմանի Հայութեան ամենատարեց Մայրիկը, 108 տարեկան, որ պիտի պատուուի Ոսկի շքանշանով մը :

Փառատօնին գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը կը բերեն ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբը, ղեկավարութեամբ, Պ. Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ, Օրիորդներ ԻՐԻՍ ՊԻՒԼՊԻՒԼԵԱՆ, (մեներգ), ՍՕՆԱ ԳԱԲՐԻԷԼԵԱՆ (տաւիղ), ԹԱՐՕՆ՝ (պարէ), Պ. Պ. ՇԱՀԱՆ ՍԱՐԵԱՆ (արտասանութիւն), Ս. ՊՕՂՈՍԵԱՆ (մեներգ), ԹԱՐՕՆ (հայերէն արտասանութիւն):

Հանդէսի վերջաւորութեան պահուած է ամենագեղեցիկ անակնկալը :

Խօսնակ՝ ԵՐՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆ :

Տոմսերու գիներ՝ 400, 300, 200 Ֆր. :

Խճողումի տեղի չտալու համար կը խնդրուի նախապէս ապահովել տոմսերը հայկական գրատուններէն :

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕԴ. ԿԱՅԱՆ

Հեռախօսով արձանագրուողներէն, ինչպէս նաեւ ալօքասիոնի նպաստ ստացողներէն կը խնդրուի ներկայանալ,

5 Rue Meyran. Tél. TRU 27-35

յանձնելու եւ ստանալու համար հարկ եղած թուղթերը:

Ա. խումբի մեկնում՝ ՅՈՒԼԻՍ 5:

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Ֆր. Կ. Խաչի Տէսինի Ազգ. վարժարանի, կազմակերպուած դպրոցին հոգաբարձութեան կողմէ, հովանաւորութեամբ՝ Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղի :

Այս Շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:

Սիրուն անակնկալներ դպրոցին աշակերտութեան կողմէ, ղեկավարութեամբ ուսուցչուհի Տիկին Ռ. Միլտոնեանի :

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

Կը հրաւիրուին բոլորը անխտիր:

### ՏԱՐԵՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Փարիզի եկեղեցւոյ Անիէռ Պուա Քոլոմպի Կրթ. Մարմնոյ դպրոցին տարեվերջի հանդէսը կիրակի 23 Յունիս ժամը 3.30–ին :

Հովանաւորութեամբ՝ Հայրապետական պատուիրակ Տէր Սերովբէ եպիս. Մանուկեանի :

Արտասանութիւն, երգ, խմբերգ եւ հայկական պարեր:

Քաղաքապետարանի սրահին մէջ :

Փլաս Ժիւլիէն Կալէ, Քոլոմպ (Սէն) :

## ԴՊՐՈՑԱՍԷՐ

Ամավերջին հանդէս 30 Յունիս, կիրակի, կէսօրէ յետոյ ժամը 3ին, Դպրոցասէրի վարժարանին մէջ, 1 Պուլվ. տիւ Նոր, Լը Ռէնսի :

Ժամը չորսէն ետք պիտի սկսի դաշտահանդէսը վարժարանի գեղեցիկ եւ օդասուն պարտէզին մէջ մինչեւ կէս գիշեր :

ԵՐԳ, ՊԱՐ ԵՒ ԱՅԼ ՀԱՃԵԼԻ ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ :

Մուտքի տոմսերը պիտի ծառայեն նաեւ վիճակախաղի: Տոմսերուն գինն է 250 ֆրանք :

Հաղորդակցութեան միջոցներ. — Էկլիզ տը Բանթէնէն առնել 146 թիւ հանրակառքը եւ իջնել Ռէնսի Բավիյոն :

## ՇԱՒԻԼԻ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԵԿԵՂԵՑԱՇԷՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԸ



ԿԸ ԴԻՄԷ ՁԵՐ ՍՐՏԱԲՈՒԽ ԵՒ ԱԶՆԻՒ ԶԳԱՑՈՒՄՆԵՐՈՒՆ, ԽՆԴՐԵԼՈՎ ՁԵՐ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ, ՇՈՒՏՈՎ ԼՐԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ՄԵՐ ԱՄԷՆՈՒՍ ՍԻՐԵԼԻ ԵԿԵՂԵՑԻԻՆ :

Assoc- Cultuelle des Arméniens
C. C. P. Paris 14827-18



Le PREMIER QUOTIDIEN ARMENIEN en EUROPE

# ՅԱՌԱՋ

# HARATCH

ՕՐԱԹԵՐԹ
Հիմնադիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Fondateur : SCHAVARCH MISSAKIAN
Rédaction et Administration : 32, rue de Trévise - Paris 9e
Fondé en 1925 Tél. : PRO. 86-60 R. C. Seine 57 A 2731
C. C. P. Paris 15069-82

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
Ֆրանսա եւ գաղութներ, տարեկան 3000 ֆր. վեցամս. 1600
Արտասահման՝ տարեկան 3500 ֆրաք: Հատը 12 ֆր.

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ 19 ՅՈՒՆԻՍ • MERCREDI 19 JUIN 1957

33ՐԴ ՏԱՐԻ — ԹԻՒ 7909 33ème ANNEE Directrice : Arpik MISSAKIAN ՆՈՐ ՇՐՋԱՆ, 13ՐԴ ՏԱՐԻ, ԹԻՒ 3720

## ՕՐՈՒԱՆ ԽՕՍՔԸ

### ՆՈՐ ԴԱՀԼԻՃԻՆ ՀՈԳԵՐԸ

•

Պուրժէս - Մօնուրիի կառավարութիւնը իշխանութեան գլուխ կուգայ քաղաքական ծանր պայմաններու տակ :

Կարելի չեղաւ իրականացնել «ազգային միութեան» կառավարութիւն մը, ինչպէս փափաքելի էր :

Այն խմբակցութիւնները, որոնք պատճառ եղան ընկերվարական Կի Մոլէի տապալման, չհամարձակեցան մտնել նոր դահլիճին մէջ, խուսափելով պատասխանատուութիւն ստանձնելէ :

Նոր կառավարութեան ղեկը անցաւ արմատական - ընկերվարականներուն ձեռքը : Բացի վարչապետէն, ներքին, ելմտական, ազգային պաշտպանութեան եւ կրթական նախարարները կը պատկանին այս կուսակցութեան երկու հատուածներուն :

Ընկերվարականները կը պահեն կարգ մը գլխաւոր պաշտօնատուններ, ինչպէս արտաքին, ընկերային գործերու, Ալժերիոյ, Սահարայի եւ անդրծովեան Ֆրանսայի նախարարութիւնները :

Ուրեմն երկու գլխաւոր կուսակցութիւններ իրարու մէջ բաժնած են ամէնէն պատասխանատու գործերը :

Կի Մոլէի դահլիճը ինկած էր գլխաւորապէս իր ելմտական ծրագիրներուն պատճառաւ: Այս անգամ արմատական նախարար մըն է, որ ստանձնած է նոր ծրագիր մը ներկայացնելու պաշտօնը, ընկերվարական Ռամատիէի փոխարէն :

Պետական գանձը անխուսափելի վճարումներուն ընդ. առաջ երթալու համար պարտաւորուեցաւ ութսուն միլիառի փոխառութիւն մը ընել Պանք տը Ֆրանսէն՝ երբ տակաւին չէր կազմուած նոր կառավարութիւնը :

Ներքին վճարումներու համար անհրաժեշտ է գտնել հասոյթի նոր աղբիւրներ : Խօսք կայ նոր փոխառութեան մը մասին, այս անգամ ձեռք տանելով պետական դրամատան ոսկիի պահեստին :

Նախկին կառավարութիւնը ծրագրած էր 250 միլիառի խնայողութիւն մը կատարել ելմտացոյցին մէջ: Չյաջողեցաւ իր ծրագիրը :

Քանի կը տեւեն Ալժերիոյ կռիւները, հնարաւոր պիտի չըլլայ հիմնական խնայողութիւններ կատարել :

Ալժերիան Ֆրանսայի տնտեսական - ելմտական տագնապին գլխաւոր պատճառներէն մէկն է միայն: Բայց ոչ միակը :

Սուէզի տագնապը շատ սուղ արժեց պետական գանձին: Բացի արշաւանքի զինուորական բացառիկ ծախքերէն, քարիւղի ճամբուն փակումը պատճառ դարձաւ, որ Թէքսասէն, Վէնէզուէլլայէն եւ Քարայիպներէն հրանիւթ գնուի տոլարով, աւելի սուղ գիներով :

Տնտեսական տագնապին ուրիշ մէկ պատճառն էր 1956ի դէչ հունձքը: Մինչ 1955ին Ֆրանսա 50 միլիառ ֆրանքի արմտիք արտածած էր դէպի օտար երկիրներ, 1956ին պարտաւորուեցաւ 25 միլիառի ներածում կատարել: Որով 75 միլիառի օտար դրամ կորսնցուց :

Ներածումները կը շարունակուին դեռ : Արտածումները տակաւին իրենց բնականոն վիճակը չեն գտած: Մեծ յոյսեր դրուած են այս տարուան լաւ հունձքին վրայ :

Մինչ այդ, նոր կառավարութիւնը անմիջական դրամի պէտք ունի :

Ամէնէն ապահով եւ դիւրին միջոցն է նոր տուրքերու հաստատումը :

Ուղղակի տուրքերը ծանր անդրադարձումներ կրնան ունենալ հարկատուներուն վրայ: Ուստի կառավարութիւնը ծրագրած է յաւելում կատարել անուղղակի տուրքերուն վրայ, որոնք համեմատաբար նուազ զգալի կ'ըլլան :

Ամէնէն առաջ պիտի աւելցնեն հրանիւթի եւ հեռաձայնային հաղորդակցութեանց գիները: Ուրիշ տուրքեր ալ նախատեսուած են:

Յայտնի ընկերվարական երեսփոխան հանգուցեալ Բրնօտէլ ժամանակին ունէր նշանաւոր խօսք մը, զոր կը կրկնէր միշտ, ամէն անգամ որ հասոյթի նոր աղբիւրներ կ'որոնէր երեսփոխանական ժողովը.

— Դրամը պէտք է առնել ունեցողէն :

Մանր առեւտրականներն ու ամսականաւոր աշխատաւորները ի վիճակի չեն նոր զոհողութիւններ կատարելու :

Կը թուի թէ նոր կառավարութիւնը ծրագրած է դրամը առնել ունեցողէն: Ու նաեւ հիմնական կարգադրութիւն մը ընել՝ վերջ տալու համար Ալժերիոյ տագնապին :

ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ

## ՕՐՈՒԱՆ ԴԷՊՔԵՐԸ

### — ԴԱՀԼԻՃԻՆ ԿԱԶՄԸ ԱՄԲՈՂՋԱՑԱՒ

•

### ԵԼՄՏԱԿԱՆ ԾՐԱԳԻՐՆԵՐՈՒ ԱՆՄԻՋԱԿԱՆ ՔՆՆՈՒԹԻՒՆ

Երկուշաբթի գիշեր վարչապետ Պուրժէս - Մօնուրի կրցաւ ամբողջացնել դահլիճին կազմը եւ յայտնեց փոխ-նախարարներու լրիւ ցանկը: Բուն նախարարներէն զատ դահլիճը կը հաշուէ 22 փոխ նախարարներ (կամ պետական քարտուղարներ) եւ 7 փոխ քարտուղարներ : Այս ձեւով, դահլիճը կազմուած կ'ըլլայ ընդամէնը 45 անդամներէ, բաղկացուցիչ հետեւեալ տարրերով.—16 արմատականներ, չորս «տարակարծիք» արմատականներ, 17 ընկերվարականներ, չորս ընկերվար - հանրապետականներ եւ երկու ձախ – հանրապետականներ: Ասոնց վրայ պէտք է աւելցնել երկու կամ երեք փոխ քարտուղարներ, որոնց ինքնութիւնը պիտի ճշդուի քանի մը օրէն :

Դահլիճը իր առաջին նիստը գումարեց երկուշաբթի օր :

Ելմտական Նախարար Ֆէլիքս Կայարի առաջարկին վրայ, կառավարութիւնը որոշեց առժամաբար արգելք հանդիսանալ եւրոպական եւ այլ երկիրներու հետ առեւտրական փոխանակութեանց ազատութեան: Տարուան սկիզբը գոյութիւն ունեցող ներածումներուն քանակը անփոփոխ պիտի մնայ, իսկ Ֆրանսայի տնտեսութեան համար անհրաժեշտ եղող նախանիւթերուն ներածման վրայ տուրքերու յաւելում պիտի չկատարուի :

Ելմտական նախարարը, առեւտրական փոխանակութեանց ազատութեան վրայ դրուած արգելքը ներկայացուց որպէս անհրաժեշտութիւն՝ տրուած ըլլալով որ Ֆրանսայի արտաքին առեւտուրը նպաստաւոր պայմաններու մէջ չի գտնուիր այժմ, եւ 1957ի ընթացքին ներածումներու եւ արտածումներու ընդհանուր պիւճէին ընդհանուր բացը արդէն իսկ կը հասնի վեց հարիւր միլիառի :

Կառավարութիւնը արդէն իսկ սկսած է պատրաստել ելմտական ընդհանուր ծրագիր մը՝ երկրին ելեւմուտքը վերականգնելու համար: Իսկ անմիջական կերպով գործադրութեան պիտի դրուին հետեւեալ միջոցները.— 1) Յառաջիկայ օրերուն ընթացքին, պիտի դեղչուին անհրաժեշտ չնկատուող արտադրութեանց յատկացուած վարկերը, զանոնք փոխանցելու համար արտածումներ կատարող ճարտարարուեստական եւ հողագործական ձեռնարկներու : 2) Պիտի նշանակուին նոր տուրքեր, առանց որուն անկարելի է նախատեսել տնտեսական ու ելմտական հաւասարակշռութեան վերահաստատումը :

Տուրքերու այս նախագծին քուէարկութիւնը, ըստ Ելմտական Նախարարին, պէտք է կատարուած ըլլայ ամէնէն ուշը մինչեւ Յունիս 25: Այս նախագիծը եթէ քուէարկուի, կառավարութիւնը այլեւս պէտք չունենար նոր փոխառութիւններ ընելու Ֆրանսայի Դրամատունէն կամ ուրիշ պետական պահեստէն :

Առեւտրական ազատ փոխանակութեանց վրայ դրուած արգելքը կրնայ որոշ չափով ուշացնել եւրոպական համաձայնագրերու իրագործումը, սակայն, աւելցուց Ելմտական Նախարարը, այս որոշումը բացարձակ անհրաժեշտութիւն մը ըլլալով հանդերձ, պէտք է նկատել ժամանակաւոր կարգադրութիւն մը: Ամէնէն առաջ պէտք է վերականգնել Ֆրանսական տնտեսութիւնը՝ օտար մրցակցութեան դիմանալու համար, ապա միայն կարելի պիտի ըլլայ երկրին սահմանները լայն բանալ օտար արտադրութեանց առջեւ :

Այս հիման վրայ, Ելմտական Նախարարը կ'առաջարկէ նախ որոշել եւ իրագործել յաւելեալ տուրքերու ծրագիրը, ապա միայն վաւերացնել եւրոպական համաձայնագրերը :

× Նախարարաց Խորհուրդը նոր նիստ մը պիտի գումարէ այսօր, չորեքշաբթի, ելմտական ծրագիրներուն վերջնական ձեւ մը տալու համար՝ նախ քան զանոնք Ազգ. Ժողովի վաւերացման ներկայացնելը:

× Ելմտական նախարարը կը պատրաստէ նաեւ ծրագիր մը, որուն հիման վրայ հրանիւթի վաճառքը ազատ պիտի ձգուի, բայց լիտր գլուխ 13.60 ֆրանքի յաւելում մը պիտի կրէ: Այս ձեւով պիտի գոյանայ 70 միլիառ ֆրանք:

## ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ՀԻՒՍ. ԱՓՐԻԿԷԻ ՄԷՋ

•

Ալժէի մէջ, ապահովութեան սպասարկութիւնները երեւան հանեցին ապըստամբներուն ի նպաստ ձայնասփիւռ գործիքներու բաղկացուցիչ մասեր զողցող ցանց մը, որ կը ծրագրէր սփռող - ընդունող գործիքներ զողնալ գործարաններէն ու զանոնք յանձնել ապստամբներուն: Ցանցաւորներն ու իրենց մեղսակիցները (բոլորն ալ մահմետական), ձերբակալուեցան :

× ՄԱԿի արաբեւասիական խմբակին ներկայացուցիչները դիմում մը կատարեցին ընդհ. քարտուղար Համըրշըլտի եւ պահանջեցին որ անհրաժեշտ միջոցները ձեռք առնէ միջազգային քննիչ յանձնախումբ մը Ալժերիա ուղարկելու համար, որպէսզի քննուի թէ որոնք են Մէլուզայի ջարդերուն պատասխանատուները :

× Ալժերիոյ Ազատագրական Ճակատի կազմակերպութիւնը մասնաճիւղ մը հաստատած է Գերմանիոյ Համպուրկ քաղաքին մէջ, ուր առաւելաբար լծուած է քարոզչական աշխատանքի. Թռուցիկներ կը տպէ, թերթ կը հրատարակէ, ռումբեր կը շինէ, Ֆրանսական Օտար Լեգէոնի անդամներուն մօտ քարոզութիւն կը կատարէ, որպէսզի դասալիք ըլլան :

× Թունուզի կառավարութիւնը շուտով դեսպանատուն մը պիտի բանայ Արեւմտ. Գերմանիոյ մէջ :

× Գահիրէի Թունուզեան դեսպանը բանակցութիւններ կը վարէ Եգիպտոսի Արտաքին փոխ - Նախարարին հետ՝ Թունուզի համար եգիպտական օժանդակութիւն մը ապահովելու համար :

× Իսկ Սուրիոյ Արտաքին նախարարութեան ներկայացուցիչներէն մէկը յայտարարեց թէ «նիւթական եւ բարոյական ամէն միջոցներով» պիտի օգնեն Թունուզի, որպէսզի «իր հողամասէն առանց պայմանի հեռացնէ ֆրանսական ուժերը»:

× Ֆրանսայի համայնավար կուսակցութեան ղեկավար անդամներէն Լէօն Ֆէլիքս ճառ մը խօսելով պահանջած է Ալժերիացիներէն, որ վերջ տան Ֆրանսայի մէջ ծայր տուած ահաբեկումներուն, այն պատճառաբանութեամբ թէ ահաբեկումներուն պատճառով Ֆրանսայի ժողովուրդը սկսած է խորթ աչքով դիտել Ալժերիացի բանուորները :

## ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔ

Եգիպտոսի մէջ Յուլիս 3ին տեղի պիտի ունենան ներկայ վարչակարգին տակ կազմակերպուած երեսփոխանական առաջին ընտրութիւնները: Եգիպտոսի Երեսփ. ժողովը բաղկացած պիտի ըլլայ 350 անձերէ. արդէն իսկ աւելի քան 2508 հոգի դրած էին իրենց թեկնածութիւնը: Սակայն Նասր եւ իր անմիջական գործակիցներէն Ներքին նախարարը, Քաղաքապետութեանց Նախարարն ու Պատերազմական Նախարարը (բոլորն ալ Ազգ. Միութեան կոմիտէին անդամներ), մէկիկ մէկիկ քննելով թեկնածուներուն անձն ու քաղաքական անցեալը, յայտարարած են թէ 2508 թեկնածուներէն 1142ը «անընտրելի» են : Որոշապէս կարելի է հետեւցնել ուրեմն, որ Եգիպտոսի վարիչները կ'ուզեն ամէն միջոց ձեռք առնել, որպէսզի անբաղձալի անձերը ոչ միայն չընտրուին, այլ նաեւ իրենց թեկնածութիւնն իսկ չկարենան դնել :

Կառավարութիւնը վերջերս նոր օրէնք մըն ալ հանած էր, որուն հիման վրայ Ներքին Նախարարութեան կողմէ հսկողութեան տակ պահուող անձերը ինքնաբերաբար «անընտրելի» են, հետեւաբար չեն կրնար իրենց թեկնածութիւնը դնել : Ներքին Նախարարութիւնը 7500է աւելի համայնավար, վաֆտական կամ «իսլամ եղբայրներու» կուսակցութեանց պատկանող անձնաւորութեանց վրայ հսկողութիւն կը բանեցնէ արդէն իսկ :

× Լիբանանի կառավարութիւնը խիստ յուշագիր մը պիտի ներկայացնէ խորհրդային կառավարութեան, բողոքելով թէ այս վերջինը միջամուխ կ'ըլլայ Լիբանանի ներքին գործերուն: Արտաքին Նախարարը, Շարլ Մալիք, յայտնեց թէ Խ. Միութեան հետ դիւանագիտական յարաբերութեանց խզումը անհաւանական պէտք չէ նկատել :

× Իրաքի նախկին վարչապետը, Նուրի Սայիտ, որ Թագաւորին կողմէ նոր դահլիճ կազմելու պաշտօն ստացած էր, հրաժարեցաւ այդ պարտականութենէն: Թագաւորը այդ պաշտօնը յանձնեց ծերակուտական Ալի Ճաուտաթի, որ 1934ին եւ 1949ին վարչապետ եղած է, ատեն մըն ալ վարած է Ուաշինկթընի իրաքեան դեսպանի պաշտօնը :

× Գահիրէի յորդանանեան դեսպանատան ներկայացուցիչներէն մէկը յայտարարեց, որ թէեւ դեսպանատունը պիտի փակուի, սակայն երեք ներկայացուցիչներ պիտի մնան Գահիրէ՝ հիւպատոսական ընթացիկ գործերով զբաղելու համար :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՖՐԱՆՍԱՅԻ ողողուած շրջաններուն մէջ, ջուրերու մակարդակը սկսաւ հետզհետէ իջնել: Շատ մեծ աշխատանքներ անհրաժեշտ են վնասուած շրջաններուն մէջ կեանքը իր բնականոն ընթացքին մէջ դնելու համար: Նիւթական վնասները ցարդ կը հաշուուին 30 միլիառ ֆրանք :

ԻՏԱԼԻՈՅ մէջ հեղեղները աւելի ողբերգական հետեւանքներ ունեցան. փոթորիկներուն ընթացքին 16 հոգի մեռան, 60 հոգի վիրաւորուեցան, տասը ուրիշներ անհետացած են, իսկ հարիւրաւոր բնակարաններ՝ հեղեղէն քշուած: Հազարաւոր հեքթար տարածութեամբ մշակուած հողեր ամբողջութեամբ ծածկուած են ջուրով, իսկ կարկուտները հիւս. շրջանի բերքին 40 առ հարիւրը փճացուցին :

ԱՄԵՐԻԿԱՅԻ գիտուն մը, Ուիլեըմ Շերվուտ, որ քաղցկեղի մասնագէտ էր, անձնասպան եղաւ, որովհետեւ երկու օրէն պէտք էր ներկայանար «Հակա - ամերիկեան գործունէութեանց քննիչ յանձնախումբին»: Մեծապէս ազդուած էր իր վըրայ ծանրացող այս կասկածէն: Ազդուած էր նաեւ այն բանէն, որ իր հարցաքննութիւնը պիտի սփռուէր հեռատեսիլէն :

ԱՐԵՒՄՏ. ԳԵՐՄԱՆԻՈՅ Կարմիր Խաչի տնօրէնը յայտնեց թէ վերջին աշխարհա -

(Շար.ը կարդալ Դ. էջ)

## ԵՒՐՈՊԱԿԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳՐԵՐՈՒ ՎԱՒԵՐԱՑՈՒՄԸ

Ազգ. Ժողովի Արտաքին գործերու Յանձնաժողովը քննեց Եւրաթոմի եւ Հասարակաց Շուկայի հարցերը: Լսելէ վերջ Արտաքին փոխ Նախարար Մորիս Ֆորի բացատրութիւնները, Յանձնաժողովը այն եզրակացութեան եկաւ որ Ֆրանսա առանց վախի կրնայ ընդունիլ Եւրաթոմի ու Հասարակաց Շուկայի համաձայնագրերը: Որոշուեցաւ հարցին քննութիւնը ներկայացնել Ազգ. Ժողովին՝ առ ի վաւերացում: Յուլիս 2էն սկսեալ Ազգ. Ժողովի բոլոր նիստերը պիտի յատկացուին ուրեմն եւրոպական համաձայնագրերուն:

●

**ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՄԸ**, Եղիա Ղարիպեան, Կարտանի մէջ զոհ գացած է սարսափելի արկածի մը: Սանթրալ Թէրմիք ելեկտրականութեան գործարանին մէջ, հսկայ կաթսայի մը (սիթէրն) ներքնամասը ներկած ժամանակ, ներկի եւ հրանիւթի խառնուրդէն ուժեղ կրակ մը ծայր կու տայ: Մինչեւ որ ընկերները օգնութեան հասնին, հէք երիտասարդը այնպիսի այրուածքներ ստացած կ'ըլլայ, որ քիչ ատեն վերջ հոգին կ'աւանդէ:

**ՍԱՍՏԻԿ** փոթորիկները կը շարունակեն մեծ վնասներ հասցնել Ֆրանսայի հարաւարեւմտեան շրջաններուն մէջ: Նիւթական վնասները շատ մեծ են: Հանրային աշխատանքներու նախարարը տեղւոյն վրայ քննութիւն կատարեց:

**ԻՏԱԼԻՈՅ** մէջ, Փոյի տելթային կղզիներէն մէկը ամբողջովին ողողուեցաւ: Կղզիին բնակիչները, աւելի քան 35.000 հոգի, փոխադրուած են այլուր:

**ԱՆԳԼԻՈՅ** Արտ. Նախարար Սելվին Լոյտ, որ ամուսնալուծման դատ բացած էր իր անհաւատարիմ կնոջ դէմ, դատը շահեցաւ:

**Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐԸ** խստիւ ժխտեցին թէ Փուտափեշտի ամերիկեան դեսպանատան զինուորական կցորդը լրտեսութիւն կ'ընէր:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Մեծ պատրաստութեամբ կը տօնուի այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին: Սալ տէ Ֆէթի վերնայարկը: Նախաձեռնութեամբ Կապ. Խաչի, եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի:

Կը նախագահէ Տիկին ՇՈՒՇԱՆԻԿ ՏԷՐ-ՍԱՐԳԻՍԵԱՆ:

Կը խօսի ՏԻԿ. ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ:

Գեղարուեստական խնամուած բաժին:

Խմբերգ, երգ, արտասանութիւն, Սանուհիներու կողմէ, պար ու նաեւ մէկ արարով ներկայացում մը: Հաճելի անակնկալներ:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

Մուտքը ազատ է:

## Մ. ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Ամավերջի հանդէսը՝

ԿԻՐԱԿԻ, ՅՈՒՆԻՍ 30ԻՆ, ԺԱՄԸ 3ԻՆ

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Սեբաստիոյ Մուրատ Ուս. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի մեծ դաշտահանդէսը 30 Յունիս, Սէն Ժերոմ, Պառ տիւ Շալէի մէջ, 117 Ավընիւ Քորօ:

Գեղարուեստական ընտրուած բաժինով մը: Հայկական պարեր, նուագ եւ հաճելի անակնկալներ:

Առատ եւ դիւրամատչելի պիւֆէ:



## ԳԻՆԵՁՕՆ

Ալֆորվիլի Հայ Մարզականը ի պատիւ իր մարզիկներուն եւ մարզասէր բարեկամներուն գինեձօն մը կը սարքէ այս երեքշաբթի, քաղաքապետարանի սրահը, ժամը 20.30ին, րիւ Վօլթէր:

Ներկայ կ'ըլլայ քաղաքապետ ՐԱՈՒԼ ՊԼԷՕՁ:

Շքանշաններու բաշխում, Բ. եւ Գ. պահեստի խումբերուն, որոնք Փարիզի ախոյեան հանդիսացան:

Մուտքը ազատ է:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Տիկին Սայրատարեանէ տասը հազար ֆրանքի գումար մը, ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ շինութեան, իր աղջկան ապաքինման առթիւ:

×

Այրի Տիկին Հայկ Աչըքկէօզեան, Պ. Նըշան եւ Գէորգ Աչըքկէօզեան, Տէր եւ Տիկ. Յակոբ Աչըքկէօզեան եւ զաւակները, եւ բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, եւ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր ՀԱՅԿ ԱՉԸՔԿԷՕԶԵԱՆԻ մահուան առթիւ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Շէյրանցի Միհրան Պօյաճեան, հօրը անունը Սարգիս, մօրը Վառվառա, որ 1914ին իր քրոջը հետ Թուրքիայէն հեռացած են: Մինչեւ 1946 թղթակցած է անոր հետ, ուրկէ վերջ հետքը կորսուած է: Տեղեկացնել իր քրոջ Պօյաճեան Երջանիկի, 16 Օրժոնիկիցէ Պողոտայ Երեւան, Հայաստան:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Հերմինէ Մանուէլեանի մահուան առիթով, փոխան ծաղկեպսակի, Հայ Կարմիր Խաչի Օգնութեան Մարմնի (Փարիզահայ Տիկնանց Միութիւն) Ֆէսանվիլիէի օգափոխութեան կայանին կը նուիրեն.— Տիկին Ն. Գալփաքեան երկու հազար ֆրանք, Տիկին Ա. Մանուկեան հազար ֆրանք:



## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տէր եւ Տիկին Մարտիրոս Պօյաճեան եւ Տէր եւ Տիկին Արամ Աչըքկէօզեան իրենց ազգականին՝ Պ. Հայկ Աչըգկէօզեանի կըսկծալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի 5000ական ֆրանք կը նուիրեն Հայ Մշակոյթի Տան հիմնադրամին:

Նոյն առթիւ Օր. Էլմօն Ճիվէլէկեան հազար ֆրանք:

Մարսէյլ Պ. Տիգրան Վարդեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հազարական ֆրանք կը նուիրեն Ֆ. Կ. Խաչը, Տահրիկեան եւ Օղուսեան ընտանիքները:

Յովհաննէս Նիկողոսեան կը նուիրէ փոխան ծաղկեպսակի տասը հազար ֆրանք, Մշակոյթի Տան, Կարապետ Ալեքսանդրեանի մահուան քառասունքին առթիւ:

Այս կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին, Կաթողիկէ Ս. Էջմիածնի տօնին առթիւ պիտի կատարուի հանդիսաւոր պատարագ եւ հայրապետական մաղթանք:

Արարողութիւններուն կը նախագահէ հայրապետական պատուիրակ Գեր. Սերովբէ եպիսկ. Մանուկեան:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Լիոնէն Պ. Ղազար Ղազարեան, ի յիշատակ, իր քրոջը՝ Տիկին Ազատուհիի, ծնեալ Ղազարեան, մահուան 21րդ տարելիցին առթիւ, Ֆ. Կապ. Խաչի օգափոխութեան կայանին հազար Ֆր. կը նուիրէ:

Օր. ՔԼԷՄԱՆԹԻՆ ՀԱԼԱՃԵԱՆ
Պ. ԺԱԳ ՄԱՐԿՈՍԵԱՆ
Նշանուած

Առնուվիլ, 9 Յունիս, 1957 Իսի

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

**ՏԱՐՕՆ - ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ** Հայր. Միութեան ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը չորսին, Քաֆէ Քլէր տը Լիւն, (փլաս տ'Իթալի):

**ՍԵԲԱՍՏԻՈՅ** Մուրատ Ուս. Միութեան անդամական ժողովը, կիրակի 30 Յունիս, կէսօրէ վերջ ժամը 4.30ին, Խրիմեան վարժարանի մէջ, 2 րիւ տը լա Տէֆանս, Իսի: Կը խնդրուի անդամներէն անհրաժեշտօրէն ներկայ գտնուիլ: Օրակարգ՝ Ա) Բարոյական եւ նիւթական տարեկան համարատուութիւն: Բ) Նոր վարչութեան ընտրութիւն:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ 25 Յունիս, երեքշաբթի ժամը 21ին, Քատէի սրճարանին վերնայարկը:

Դասախօս՝ Պ. ՄԻՆԱՍ ԹԷՕԼԷՕԼԵԱՆ

Նիւթ՝ Խորհրդահայ գրականութիւնը 1920 - 1950՝ իր գլխաւոր անկիւնադարձերով:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Մուտքը ազատ է:

## ԿՐԸՆՈՊԼԸ

Պարգեւաբաշխութիւն եւ մանկական հանդէսը 30 Յունիս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Սալ Սէն Լուի, րիւ ժէ:

Imp. ARAXES, 46, Rue Richer Paris-9e





ըսաւ. «Վաղը այստեղ պիտի չմնամ՝ լսելու համար քաղաքացի Պեւանի (անգլիացի աշխատաւորական) գաղութատիրութեան դէմ տուած դասերը։ Անգլիոյ Աշխատաւորական կուսակցութիւնը կռնակէն հարուածեց մեզ՝ Սուէզի մէջ»։

Սահարայի նախարարը կրկին խօսեցաւ Ալժերիոյ մասին. «Անգլիոյ եւ Ֆրանսայի մէջ ո՛չ ոքի համար գաղտնիք է, թէ Ալժերիոյ ըմբոստներուն իրական ղեկավարն է Նասր։ Եթէ մեզմէ մէկը Աշխատաւորական կուսակցութեան ժողովին երթայ՝ Անգլիոյ ներքին հարցերուն չի խառնուիր»։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ մէջ գործադրուած է չորս մահապարտներու մահապատիժը։ Ասոնցմէ մէկը 25ամեայ ուսանողուհի մըն է, որ գրող Կալլի ու լրագրող Օպէսովաքիի հետ դատապարտուած էր։

ՄԱՐՈՔԻ Տեղեկատուութեան նախարարը Պերլինի մէջ յայտարարեց թէ նախընտրելի է միջերկրականեան պետութեանց համաձայնութիւն մը յաջողցնել քան համարաբական չարժման ուժ տալ։

ԳԱՀԻՐԷԻ եւ Դամասկոսի ձայնասփիւռները կը յայտարարեն թէ «Ֆրանսա կ'ուզէ գողնալ Սահարայի գանձերը» եւ կոչ կ'ուղղեն տեղացի ժողովուրդին, որ քանդէ քարիւղի հորերուն շուրջ բարձրացուած կառուցումները։

ԱՐԱԲԵՒՍՈՒՐԻԱԿԱՆ յարաբերութիւնները մէկ օրէն միւսը կրնան խզուիլ, ըստ Լիբանանէն ստացուած տեղեկութեանց։

ՀՆԴԿԱՑ ովկիանոսի մէջ աւելի քան 20 հազար թոն մեռած ձուկեր կը ծփան ջուրին երեսը։ Ձուկերու զանգուածային այս ջարդին պատճառները գաղտնի կը մնան։

ԱՆԳԼԻՈՅ հասարակապետութեան վարչապետներու ժողովին մէջ Համայնավար Չինաստանի հարցը տեղի տուաւ անհամաձայնութեանց։ Հնդկաստանի վարչապետը, Նեհրու, կ'ուզէ որ Չինաստան ընդունուի ՄԱԿի մէջ, մինչ Աւստրալիոյ վարչապետը կը հակառակի։ Համայնավար Չինաստանի իրաւական գոյութիւնը ընդունուած է Անգլիոյ, Հնդկաստանի, Փաքիստանի եւ Սէյլանի կողմէ, բայց Քանատա, Աւստրալիա, Նոր Զելանտա եւ Հարաւ. Ափրիկէ կը մերժեն ճանչնալ զայն։

ԱՆԳԼԻՈՅ Արտաքին նախարարը, Սելվին Լոյտ, Սեպտեմբերին Նուկոսլաւիա պիտի այցելէ։

ՖՐԱՆՍԱԿԱՆ կառավարութիւնը շուտով կոչ պիտի ուղղէ ժողովուրդին, որ ղեղչէ կովի եւ հորթի միսերու իր սպառումը, փոխարէնը գնէ խոզի, ոչխարի ու հաւի միս։

ՍՈՒՐԻԱՅԻ երեսփոխան մը որոշած է դիմումներ կատարել Պանտունկի ուխտին մասնակցող պետութեանց մօտ, որպէսզի ընդունուի «ալժերիական ազատ կառավարութեան» մը ստեղծումը։

ԱՐԺԱՆԹԻՆԻ կառավարութիւնը որոշեց ընդհ. ընտրութեանց նախօրեակին վերջ տալ պաշարման վիճակին։

---

ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ

### Ս. ՂԱԶԱՐ (ՎԵՆԵՏԻԿ)

Վերջին երկու տարիներու յաջողութիւնէն քաջալերուած, մանաւանդ երախտապարտութեան մօտ, այս տարի՝ կրկին կը կազմակերպուի ուխտագնացութիւնը։

Խումբը պիտի այցելէ Հռոմ, Փոմփէյ, Նափոլի եւ վերջին երկու շաբաթը Վենետիկ։

Մեկնում՝ Օգոստոս 8ին, եւ վերադարձ՝ Սեպտեմբեր 1ին։

Մանրամասնութեան եւ արձանագրութեանց համար դիմել՝

Dr. Aram Djindjian
29 rue Bleue, PRO 79-09
G. Atamian
53 rue Châteaudun, TRI 57-74
H. Basmadjian
11, Rue Béranger
Arnouville-les-Gonesse (S. et O.)
Mr Taron
58, Bd Serrurier PARIS-19

Արձանագրութիւնները մինչեւ ՅՈՒՆԻՍԻ ՎԵՐՋ

---

Այրի Տիկին Սիրանոյշ Եափուճեան, Պ. Եղիա Եափուճեան, ինչպէս նաեւ Եափուճեան, Հայրապետեան, Քէչիչեան, Սիմոնեան, Թելիէ, Մինչ ընտանիքները սրտի խորունկ ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին

ՍՈՒՔԻԱՍ ԵԱՓՈՒՃԵԱՆԻ

մահը՝ որ տեղի ունեցաւ Յունիս 27ին, 69 տարեկանին։ Յուղարկաւորութիւնը այս երկուշաբթի առտու ժամը 8ին, իր բնակարանը, 59 Ավընիւ տիւ Պա Մէօտօն, Իսի լէ Մուլինօ։

ԾԱՆՕԹ.— Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

---

### ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Հայ Կարմիր Խաչի Օգն. Մարմնի փարիզահայ Տիկնանց Միութիւն Ֆէօանվիլլէի օդափոխութեան կայանին արձանագրուող մանուկներու Ա. խումբին բժշկական քննութիւնները տեղի պիտի ունենան յառաջիկայ երկուշաբթի 1 Յուլիսին եւ ուրբաթ 5 Յուլիսին։

Հետեւաբար կը խնդրուի ծնողքներէն մանուկները առաջնորդել Հայ Կարմիր Խաչի դարմանատունը, 15 բիւ Ժան Կուժօն, Փարիզ, վերոյիշեալ օրերուն, առաւօտեան ժամը 9ին։

Ա. խումբի մեկնում Յուլիս ութին։

---

### ՅԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Սէվրանի Կապոյտ խաչի մասնաճիւղին կողմէ։

Կիրակի 7 Յուլիս, ժամը 15էն 23
«ՄԱՍԻՍ»ի շքեղ սրահին մէջ
87, Ավընիւ տը Լիվրի, Սէվրան,

Հայկական եւ եւրոպական պարեր, անակնկալներ, ՍԹԷՅՍԻԼԻ նուագախումբին մասնակցութեամբ։

Օթօպիւս 147 էկլիզ տը Փանթէն։
Շոգեկ. Կառ. տիւ Նորէն ժամը 14–15։

---

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Պոմոնի Ս. Սահակ – Մեսրոպ սրահի մէջ։

Այս Շաբաթ երեկոյ ժամը ճիշդ 9ին։

Ի նպաստ Ֆ. Կ. Խաչի բարենպատակ ձեռնարկներուն։

Ֆր. Կապոյտ խաչի Պոմոնի մասնաճիւղի վարժարանի աշակերտութեան համար։

Յայտագիր՝

Հանրային կեանքէ կրթիչ եւ զուարթ ներկայացում մը, արտասանութիւններ, նուագ, երգ, մանկական պար եւն.։

Տպ. ARAXES, 46, Rue Richer Paris-9e

---

### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանի Ա. խումբը կը մեկնի Յուլիս հինգին։ Կառ տը Լիոն գտնուիլ գիշերուան ժամը 9.30ին, մեծ ժամացոյցին տակ։

×

Երկու խումբերն ալ լրացած ըլլալով այլեւս դիմումներ չեն ընդունուիր։

Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչ.

---

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր եկեղեցիի մէջ պաշտօնավարելու համար կ'ուզուի քահանայական թեկնածու մը, որ եկեղեցագիտական պատրաստութիւն ունենայ։ Ղրկել կենսագրական ծանօթութիւններ եւ բանակցիլ Կրօն. Ընկերակցութեան հասցէով,

էկլիզ Արմէնիէն, 339, Ավընիւ տիւ փրատօ, Մարսէյլ (8)։

× Կրօն. Ընկերակցութիւնը շնորհակալութեամբ կը ծանուցանէ թէ՝ ողբացեալ Ա. Գէորգեանի մահուան առիթով փոխան ծաղկեպսակի եկեղեցիի հայերէնի դասընթացքին նուէր ստացած է Պ. Մահմուզեանէ երկու հազար եւ Պ. Կ. Պէրպէրասարգիսեանէ հազար ֆրանք։

× Պուլկարիայէն նամակ ունի Վահրամ Սաղրեան։

---

ՏԱՐՕՆ – ՍԱԼՆՈՑ ՋՈՐԻ Հայր. Միութեան Հերոսներու Յիշատակի հանդէսը՝ 28 Յուլիս Կիրակի Սէն Անտրէի Պէլվէտէր պարտէզի մէջ։ Մարսէյլ։

---

M.Rowcottom եւ տիկինը (ծնեալ Նիգամեան) ուրախութեամբ կը ծանուցանեն իրենց անդրանիկ զաւկին՝

ԱՐԱՄ – ՓԱԹՐԻՔԻ

ծնունդը, Մանչէսթըր 18 Յունիս, 1957։

---

### ՆՈՒԷՐ

Նիսէն Օր. Հ. Միսքճեան երեք հազար ֆրանք կը նուիրէ Այնճարի «Յառաջ» վարժարանին, փոխան հոգեհանգիստի իր ողբացեալ մօր Տիկին Մաթիլտ Միսքճեանի մահուան երկրորդ տարելիցին առթիւ։

Ստանալ «Յառաջ»էն։

---

### ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԹԱՏԵՐ. ՅԵՐԵԿՈՅԹ ՆԻՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Մարսէյլի (Պոմոն) Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբի կողմէ։ Կիրակի, 7 Յուլիս, կէսօրէ ետք ժամը 3ին, Սալ տ'Աթէն, 15 Ավընիւ տը լա Վիքթուար։

Կը ներկայացուին ծանօթ թատերագիր Գրիգոր Վահանի «ԲԱԽՏԻՆ ԱՆԻՒԸ», (կատակերգութիւն ժամանակակից Հայ կեանքէ) եւ Հայկական պար, Նոր Սերունդի Պոմոնի պարախումբի կողմէ։

Տոմսերու մասնակցութիւն 200 եւ 250 ֆրանք։

---

### Ս. ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Ամավերջի հանդէսը՝
ԿԻՐԱԿԻ, ՅՈՒՆԻՍ 30ԻՆ, ԺԱՄԸ 3ԻՆ

---



